ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

61

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



202

№ 9 ՄԱՅԻՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:*




# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ

## *Վ. ՍԱՐԳՍՅԱՆ*

*Քառասուներկու տարի առաջ, 1912 թվականի մայիսի 5-ին, լույս տեսավ Պետրոգրադի բանվորների նախաձեռնությամբ ստեղծված Կոմունիստական պարտիայի ամենօրյա լեգալ թերթի՝ «Պրավդա»-ի առաջին համարը:*

*«Պրավդա»-ի լույս ընծայումը բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները ընդունեցին մեծագույն խանդավառությամբ. Կոմունիստական պարտիայի մասսայական օրաթերթի հրատարակումով դրվեց նոր, ժողովրդական մամուլի հիմքը:*

*Ի պատիվ «Պրավդա»-ի լույս ընծայման այդ օրվա, մեր ժողովուրդը ամեն տարի Մայիսի 5-ը նշում է, որպես Մամուլի տոնախմբություն:*

*Կոմունիստական պարտիայի մեծ հիմնադիր և իմաստուն առաջնորդ Վ. Ի. Լենինը «Պրավդա» թերթի առաջին համարի լույս ընծայումից հետո գրել է. «Բանվորական օրաթերթ*





հիմնելով, Պետրոգրադի բանվորները. խոշոր, առանց չափազանցության կարելի է ասել, պատմական գործ կատարեցին»։

«Պրավդա»-ն նշանակալից դեր է խաղացել մեր երկրում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի և սոցիալիզմի հաղթանակը կազմակերպելու գործում, Կոմունիստական հասարակություն կառուցելու գործում։



Սովետական մամուլը հանդիսանում է նոր տիպի մամուլ, որին ստեղծել ու կոփել է Կոմունիստական պարտիան, մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը, Լենինի աշակերտ և նրա գործի շարունակող մեծ Ստալինը։ Նա մեր պարտիայի ձեռքին ամենաուժեղ զենքն է, որի օգնությամբ պարտիան ամեն օր, ամեն ժամ խոսում է ժողովրդի հետ, նրան հարկավոր լեզվով։ Մեր մամուլը հանդիսացել ու հանդիսանում է պարտիայի հավատարիմ ու մարտական օգնականը։ Նա մասսաների սեփականությունն է դարձնում մարքսիզմ-լենինիզմի անհաղթ ուսմունքը, անդադրում պրոպագանդում է սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները, մոբիլիզացնում է աշխատավորների ուժերը՝ հաջողությամբ ի-



րականացնելու կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները։

Սովետական մամուլը վայելում է ժողովրդի սերը, վստահությունն ու աջակցությունը։ Դա արդյունք է այն բանի, որ նա իր ամբողջ գործունեության ընթացքում ղեկավարվել ու ղեկավարվում է Կոմունիստական պարտիայի քաղաքականությամբ, որը ճշտորեն ու լիովին արտահայտում է ժողովրդի կենսական շահերը։ Բարձր գաղափարականությունը, ճշմարտացիությունը և ժողովրդի հետ սերտ կապը հանդիսանում են մեր մամուլի բնորոշ առանձնահատկությունը։

Տարեցտարի աճում ու ամրապնդվում է սովետական մամուլը։ ՍՍՌՄ ժողովուրդների բոլոր լեզուներով մեր երկրում լույս են տեսնում ավելի քան 8.000 տպագիր թերթ և 1.500 ամսագիր (1953 թվականի տվյալներով), որոնց միանվագ տիրաժն անցնում է 41 միլիոն օրինակից։ Կենտրոնական հրատարակչություններից բացի, միութենական, ավտոնոմ ռեսպուբլիկաներում, մարզերում և երկրամասերում կան և գործում են ավելի քան 130 տեղական հրատարակչություններ, որոնք տարեկան թողարկում են հարյուր միլիոնավոր օրինակներով գրքեր։ 1952 թվա-

կանին հրապարակված գրքերի ընդհանուր տիրաժը 88 տոկոսով ավելի էր, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Մարքսի, Էնգելսի, Լենինի և Ստալինի աշխատությունները դարձել են սովետական բոլոր աշխատավորների սեփականությունը։ Հսկայական տիրաժներով ամեն տարի լույս են ընծայվում քաղաքական, գեղարվեստական գրականություն, ինչպես նաև մասսայական դպրոցների և բարձրագույն ուսումնական հաստատությունների համար դասագրքեր։

Սովետական Միության մեջ մամուլի ընդհանուր զարգացմանը համընթաց աճում ու զարգանում է սովետահայ մամուլը։ Ներկայումս Հայաստանում լույս են տեսնում ռեսպուբլիկական, քաղաքային, շրջանային, բազմատիրաժ հիմնարկային 46 անուն տպագիր թերթ՝ 249.000 օրինակ միանվագ տիրաժով և 10 անուն ամսագիր՝ մոտ 33.000 օրինակ տիրաժով։

Անցյալ տարի միայն Հայպետհրատը հրատարակել է 459 անուն գիրք՝ մոտ 4,5 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։ 1954 թվականին Հայպետհրատը պետք է լույս ընծայի 586 անուն գիրք՝ 6 միլիոն 363 հազար օրինակ տիրաժով։ Մեծ թվով գրքեր ու



բրոշյուրներ են հրատարակում Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի, Պետական համալսարանի, Գյուղատնտեսության մինիստրության, Հեռակա մանկավարժական ինստիտուտի և այլ հրատարակչությունները։

Իրականացնելով կոլեկտիվ պրոպագանդիստի, կոլեկտիվ ագիտատորի և կոլեկտիվ կազմակերպչի իր դերը, մեր մամուլը ձեռք է բերել մեծ հաջողություններ։ Սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում, թե սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործ աշխատանքի և թե՛ Հայրենական Մեծ պատերազմի ահեղ տարիներին, սովետական մամուլը ցույց է տվել իր խոր նվիրվածությունը պարտիայի գործին, ժողովրդի շահերին, ապացուցել է իր ընդունակությունը պատվով կատարելու Կոմունիստական պարտիայի կողմից նրա առջև դրված պատասխանատու խնդիրները։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան և Փետրվար-մարտյան պլենումները իրենց որոշումներում տվեցին սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման հոյակապ ծրագիրը։ Պարտիան ու կառավարությունը կազմակերպում են միաժամանակ ժողովրդական սպառման առար-

կաների արտադրության շեշտակի վերելք։ Սովետական մարդիկ, ոգեշնչված հարազատ պարտիայի ու կառավարության պատմական որոշումներով, ձեռնամուխ են եղել երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու խնդրի պրակտիկ լուծմանը։

Համաժողովրդական այդ մեծ պայքարում անսահմանորեն մեծ է մեր մամուլի դերը, որը դարձել է կարևորագույն միջոց կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների լուծման համար աշխատավորների ուժերի մոբիլիզացման գործում։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումը պարտավորեցրեց կենտրոնական և տեղական թերթերին՝ լայնորեն լուսաբանել սոցիալիստական մրցության ընթացքը, կոլտնտեսային շինարարության առաջավոր փորձը և գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում պարտիական ու սովետական օրգանների աշխատանքի պրակտիկան։

Կենսագործելով պարտիայի այդ ցուցումը, մեր մամուլը, այդ թվում նաև Սովետական Հայաստանի թերթերն ու ամսագրերը զգալի աշխատանք են կատարում գյուղատնտեսության հետագա զարգացման հոյա-



կապ ծրագիրը հաջողությամբ կենսագործելու համար։ Նրանք իրենց էջերում սկսել են լայնորեն լուսաբանել այդ որոշումների կենսագործման ընթացքը կոլտնտեսություններում, սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում և ներկայումս մոբիլիզացնում են աշխատավորների ուժերը սեղմ ժամկետում և բարձր որակով անցկացնելու գարնան գյուղատնտեսական աշխատանքները։

Ընդհանրացնելով կոմունիստական շինարարության բազմահարուստ փորձը, կոնկրետ օրինակներով ու փաստերով ցույց տալով մասսաների ստեղծագործական աշխատանքը արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման բնագավառում, մեր մամուլը միաժամանակ գործարար և սկզբունքային քննադատության միջոցով վեր է հանում պարտիական, սովետական, տնտեսական կազմակերպությունների աշխատանքում եղած թերությունները։ Նա պայքարում է բյուրոկրատիզմի, քարացածության, անշարժության դեմ։

Սովետական մամուլը՝ մեր պարտիայի գաղափարական ամենահեռահար զենքն է։ Նա օգնում է՝ աշխատավորներին դաստիարակելու կոմունիզմի ոգով, բարձրացնելու

բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի քաղաքական զգոնությունն ու գիտակցությունը։ Նա հանդիսանում է ժողովուրդների բարեկամության և համագործակցության ամրապնդման ջատագովը, խաղաղության ու դեմոկրատիայի մունետիկն ամբողջ աշխարհում։

Մամուլը բուռն թափով աճում և զարգանում է նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Կապիտալիզմի շղթաներից ազատագրված երկրներում կոմունիստական և բանվորական պարտիաների ձեռքին մամուլը դարձել է մարտական զենք․ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։ Ժողովրդական Հունգարիայում ներկայումս լույս են տեսնում 360 թերթ և ամսագիր․ Հունգարական աշխատավորական պարտիայի Կենտրոնական օրգան «Սաբաթ Նեպ»-ը ամեն օր լույս է տեսնում մոտ կես միլիոն օրինակ միանվագ տիրաժով։ Չեխոսլովակիայի կոմպարտիայի կենտրոնական օրգան «Ռուդե Պրավո»-ի տիրաժը օրական հասնում է մեկ միլիոնի։ Լեհաստանում, Ռումինիայում և Բուլղարիայում վերջին տարիներս թերթերի ընդհանուր տիրաժը աճել է 4—5 անգամ։

Սոցիալիզմի լագերի երկրներում աշխա-



տավորական մասսաների սեփականությունն են դառնում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները։ Բուլղարիայում 1945—1954 թ. թ. ընթացքում լույս է տեսել հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի ավելի քան 100 աշխատություն՝ մոտ 2 միլիոն ընդհանուր տիրաժով, ընդորում նրա Երկերի ժողովածուն 35 հատորով։

Կապիտալիստական երկրների ծախու մամուլը պաշտպանում է շահագործող դասակարգերի շահերը։ Նա ատի, զրպարտության, կեղծիքի մամուլ է։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և կապիտալիստական մյուս երկրների թերթերի և ամսագրերի մեծ մասը հանդիսանում է իմպերիալիստական մոնոպոլիաների սեփականությունը։

Այժմ աշխատավորության թշնամիները, բոլոր տեսակի ռեակցիոն ուժերը բուրժուական մամուլը օգտագործում են նոր համաշխարհային պատերազմ պրոպագանդելու, պրոգրեսիվ ուժերին զրպարտելու և հալածելու, ժողովուրդների մեջ թշնամություն բորբոքելու համար։

Կապիտալիստական երկրների աշխատավորական լայն մասսաները պարզորոշ կերպով տեսնում են բուրժուական մամուլի հակաժողովրդական բնույթը և ատում են

այն։ Նրանք ավելի ու ավելի են կապվում դեմոկրատական մամուլի հետ, առաջին հերթին կոմունիստական մամուլի հետ, որովհետև դեմոկրատական մամուլը, սովետական մամուլի օրինակով, ջերմորեն պաշտպանում է աշխատավորների իրավունքներն ու շահերը, նա հանդիսանում է խաղաղության գործի պրոպագանդիստը։

Սովետական մամուլը իր աշխատանքում ուղեցույց ընդունելով ՍՄԿ Պարտիայի 19-րդ Համագումարի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան ու Փետրվար-մարտյան պլենումների որոշումները, էլ ավելի կմերձենա աշխատավորների հետ, նրանց անդուլ կերպով կպարզաբանի հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությունը, ավելի ուժգին կպայքարի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության ծաղկման ու բարգավաճման համար։



# ԱՄՆ-Ի ԱԳՐԵՍԻՎ ՊԼԱՆՆԵՐԸ ՄԵՐՁԱՎՈՐ ՈՒ ՄԻՋԻՆ ԱՐԵՎԵԼՔԻ ԵՎ ՀԱՐԱՎ-ԱՐԵՎԵԼՅԱՆ ԱՍԻԱՅԻ ՇՐՋԱՆՈՒՄ

ՅՈՒ. ԳՐԻՇՉԵՆԿՈ

Մերձավոր ու Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի ընդարձակ շրջանը վերջին ժամանակներս ամերիկյան դիվանագիտության և ռազմամոլների համար դարձել է առանձնապես ակտիվ գործողությունների ասպարեզ։ ԱՄՆ-ի իմպերիալիստները ցանկանում են այնտեղ հաստատել իրենց քաղաքական, տնտեսական և ռազմական լիակատար վերահսկողությունը։ Մերձավոր ու Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի շրջանը ամերիկյան մոնոպոլիստներին հետաքրքրում է նրա համար, որովհետև այն ունի ստրատեգիական կարևոր դիրք, ունի բնական հարստությունների վիթխարի պաշարներ և մասնավորապես նավթի հսկայական պաշարներ։

Ամերիկյան «Կրիսչեն սենչուրի» ամսագի-

րը խոսելով Մերձավոր ու Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի նկատմամբ ԱՄՆ-ի իմպերիալիստների կողմից ցուցաբերվող շահագրգռվածության մասին, հունվարի 20-ին գրում է. «Աշխարհի նավթի հայտնի պաշարների 53 տոկոսը գտնվում է Բախրայի կղզիների՝ Իրանի, Իրաքի, Կուվեյտայի, Պակիստանի, Կատարայի և Սաուդական Արաբիայի ավազուտների տակ։ Այդ փաստը գերիշխող ազդեցություն ունեցավ մեր մտածողության վրա... Միջին Արևելքում ելնելով այն բանից, որ ժամանակակից պատերազմում նավթն անփոխարինելի է և որ այդ նավթը այդքան մոտ է ռուսական սահմաններին, մենք սկսեցինք ժողովրդի ցանկությունները դիտել ինչպես երկրորդական նշանակություն ունեցող մի բանի և առաջնակարգ նշանակություն տալ այդ նավթի նկատմամբ արևմտյան տերությունների վերահսկողությանը»։

Զավթելով նավթը և մյուս բնական հարստությունները, հաստատելով իրենց քաղաքական վերահսկողությունը, իմպերիալիստները միևնույն ժամանակ աշխատում են Մերձավոր ու Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի երկրները ներգրավել իրենց ագրեսիվ պլանների իրագործման մեջ։



Այդ նպատակով վաղուց է, ինչ նրանք ձգտում են կազմակերպել միջինարևելյան ագրեսիվ բլոկ, որը պետք է ուղղված լինի Սովետական Միության և բոլոր դեմոկրատական, խաղաղասեր պետությունների դեմ։

Այսպես, 1951 թվականին ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան և Թյուրքիան առաջ քաշեցին «Միջինարևելյան հրամանատարություն» կոչվող ռազմական բլոկի ստեղծման նախագիծը։ Այդ նախագծի իրականացումը կհանգեցներ Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների փաստական օկուպացմանը և այդ երկրների կողմից իրենց սուվերենիտետը լրիվ կորցնելուն։ Սակայն իմպերիալիստական տերությունների անմիջական մասնակցությամբ «Միջինարևելյան հրամանատարություն» ստեղծելու պլանը ուժեղ դիմադրության հանդիպեց Մերձավոր ու Միջին Արևելքի ժողովուրդների կողմից և ձախողվեց։

Ժողովուրդների դիմադրությունը ձախողման հանգեցրեց միջինարևելյան բլոկի նաև մի այլ վարիանտը, որը 1952 թվականի օգոստոսին առաջ էր քաշվել ԱՄՆ-ի կառավարող շրջանների կողմից։ Այն ժամանակ փորձ արվեց կազմակերպել բլոկ Մերձավոր Արևելքում, առանց նրանում արև-

մտյան տերությունների պաշտոնական մասնակցության։ Նրա կազմի մեջ պետք է մտնեին Թյուրքիան և Արաբական երկրները, ընդորում գլխավոր դերը այդ բլոկում հատկացված էր Թյուրքիային։

Երկրորդ անգամ ևս անհաջողության մատնվելով, ամերիկյան իմպերիալիստները չհրաժարվեցին իրենց ագրեսիվ պլաններից և շարունակում են Մերձավոր, Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի շրջաններում ռազմական բլոկ ստեղծելու իրենց փորձերը։ Այս անգամ շեշտը դրվեց Թյուրքիայի և Պակիստանի վրա։

Փետրվարի 19-ին հրապարակվեց թյուրք-պակիստանյան համատեղ կոմյունիկեն, որտեղ հաղորդվում էր Թյուրքիայի և Պակիստանի միջև առաջիկայում քաղաքական, կուլտուրական և ռազմական ասպարեզում համագործակցության պակտ կնքելու մասին, որը փաստորեն նշանակում է թյուրք-պակիստանյան ռազմական բլոկի կազմավորում։ Ամերիկյան դիվանագիտությունը և զինվորականությունը ռազմական դաշինք ստեղծելու համար Թյուրքիան և Պակիստանը ընտրել էին ամենևին ոչ պատահականորեն։

Ամբողջությամբ ենթարկված լինելով Վա-



շինգտոնին, Թյուրքիան ամերիկյան մի ժուռնալիստի արտահայտությամբ հանդիսանում է «այդ ընդարձակ շրջանում», այսինքն Մերձավոր և Միջին Արևելքում «ամերիկյան քաղաքականության պատվարը»։

Պակիստանը, որն ավելի ու ավելի կախման մեջ է ընկնում ԱՄՆ-ից, խոշոր մուսուլմանական պետություն է, որը իմպերիալիստական պարագլուխների կարծիքով, պետք է իր ազդեցությամբ ծառայություն մատուցի նրանց Մերձավոր և Միջին Արևելքում բլոկ կազմակերպելու համար։

Թյուրք-պակիստանյան բլոկի ստեղծումը Միացյալ Նահանգների հովանու տակ վկայում է այն մասին, որ ԱՄՆ-ը իր իմպերիալիստական հակառակորդներին, հատկապես Անգլիային, ավելի ու ավելի է դուրս մղում Մերձավոր ու Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի շրջանից։ Այդ տանում է դեպի իմպերիալիստական հակասությունների խիստ սրումը ԱՄՆ-ի և Անգլիայի միջև։

Մամուլի հաղորդագրություններից երևում է, որ ԱՄՆ-ը ամենևին էլ մտադիր չէ սահմանափակվել մի բլոկով, որի մեջ մտնեն միայն Պակիստանը և Թյուրքիան։ Այդ ըստեղծվում է հենց այն բանի համար, որպեսզի նրա մեջ ներգրավվեն և այլ երկրներ։

Մարտի 18-ին, Թյուրքիային ուղղված Սովետական նոտայում նշվում է. «Թյուրք-Պակիստանյան պակտը... նպատակ ունի ռազմական բլոկի մեջ ներգրավել ուրիշ երկրներ, որի հետևանքով ոչ առանց հիմքերի հիշյալ պակտը գնահատվում է որպես կորիզ միջինարևելյան ռազմական բլոկ ստեղծելու համար»։

Այդ բանը չի թաքցնում ամերիկյան մամուլը և արտասահմանյան մյուս մամուլը։ Մասնավորապես Ասոշիեյտեդ Պրեսս գործակալության Վաշինգտոնի թղթակիցը գրել է. «Համաձայնությունը Պակիստանի և Թյուրքիայի միջև կհանդիսանա միջինարևելյան պաշտպանական մեծ դաշինքի ստեղծման կորիզը, որին միանալու համար կհրավիրվեն հակակոմունիստական այլ երկրներ»։ Այստեղ հիշատակված «պաշտպանական» բառը լոկ ծածկոց է թաքցնելու նոր բլոկի ագրեսիվ բնույթը, իսկ «հակակոմունիստական» բառը բացահայտորեն ցույց է տալիս նրա հակասովետական ուղղությունը։

Վերջին ժամանակները ամերիկյան դիվանագիտությունը և զինվորականությունը ծավալեցին ակտիվ գործունեություն Մերձավոր և Միջին Արևելյան այլ երկրներ թյուրք-պակիստանյան բլոկի մեջ ներգրավելու ուղղությամբ։



Թյուրքական «Իստամբուլ» թերթը ընդգծելով, որ ամերիկյան իմպերիալիստները նկատի ունեն այդ բլոկի օգնությամբ ճնշել Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, գրում է. «Ամերիկյան դիվանագիտությունը մեծ հույսեր է դնում Թյուրքիայի և Պակիստանի կողմը Իրաքին, ապա և Իրանին գրավելու վրա»։

Բնորոշ է, որ կայանալիք թյուրք-պակիստանյան պայմանագրի կնքման մասին կոմյունիկեի հրապարակվելուց հետո, Միացյալ Նահանգները շտապեցին հայտարարել Պակիստանին «ռազմական օգնություն» ցույց տալու մասին, որի նշանակությունը նույնպես գաղտնիք չէ։ «Ենթադրվում է,— հայտարարում է թյուրքական «Ենի սաբահ» թերթը,— որ այդ օգնությունը, ինչպես և Իսպանիային ցույց տրվելիք օգնությունը, Պակիստանին ցույց կտրվի նրա կողմից ԱՄՆ-ին իր տերիտորիայում ռազմական բազաներ հատկացնելու փոխարեն...»։ Ուշագրավ է նաև այն փաստը, որ եթե Պակիստանի կառավարության ներկայացուցիչները փորձում են հավատացնել, թե իբր Պակիստանն ինքն է խնդրել ԱՄՆ-ից «օգնություն», ապա ամերիկյան «Բալտիմոր սան» թերթը անհրաժեշտ չի գտնում թաքցնել, որ իրականում

հենց ԱՄՆ-ն է Պակիստանին առաջարկել խնդրել իրենից այդպիսի «օգնություն»։

Թե հատկապես ի՞նչ է նշանակում ամերիկյան «օգնությունը», բավական պերճախոս կերպով ասում է հնդկական «Հինդուստան ստանդարտ» թերթը։ «Իրադարձությունների արությունը Միջին Արևելքում և Հարավային Ասիայում,— գրում է թերթը,— պարզ ցույց են տալիս, որ նա, ով ստանում է ռազմական օգնություն, չի կարող միևնույն ժամանակ հեռու մնալ տաք և սառը պատերազմից։ Զենք ստացողը չի կարող պարզապես նրա վրա նստել... Զինված օգնությունը—դա միայն սկիզբն է։ Ամեն ինչ ցույց է տալիս այն, որ... կստեղծվի ռազմական բազաների շղթա Թյուրքիայից մինչ Պակիստան ընկած տերիտորիայում և այդ բազաները կղեկավարեն ամերիկացիները»։

Տերիտորիայի հատկացում օտարերկրյա զորքերի ռազմական բազաների համար, ազգային անկախության կորուստ, իմպերիալիստների ավանտյուրայի մեջ ներգրավում՝ սրանք են այդ բլոկին մասնակցելու դեռևս ոչ լրիվ հետևանքները։ Ինչպես հաղորդում է «Պակիստան Թայմս» թերթը, ներկայումս մի կողմից ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրության ռազմական խորհրդականների



խմբի ու պետական դեպարտամենտի ներկայացուցիչների, իսկ մյուս կողմից ԱՄՆ-ում Պակիստանի ռազմական կցորդի միջև բանակցություններ են գնում Պակիստանում օդանավակայաններ կառուցելու մասին։

Մարտի 26-ին, Պակիստանի կառավարությանը ուղղած իր նոտայում Սովետական կառավարությունը ընդգծում է. «Ինչպես Պակիստանի տերիտորիայում օտարերկրյա պետությանը ռազմական բազաների տրամադրումը, այնպես էլ իմպերիալիզմի ագրեսիվ ուժերի գործիքը հանդիսացող ռազմական բլոկի մեջ Պակիստանը մտցնելը բնավ թելադրված չէ Պակիստանի պաշտպանության շահերով և ոչ մի չափով չի համապատասխանում երկրի իսկական ազգային շահերին։ Այս քայլերը ոչ մի լավ բան չեն կարող բերել Պակիստանի ժողովրդին, որը, ինչպես և մյուս ժողովուրդները, շահագրգռված է խաղաղությամբ, իր անկախության պաշտպանությամբ, իր բարեկեցության վերելքով»։

Մերձավոր ու Միջին Արևելքում և Հարավ-Արևելյան Ասիայում ռազմական խմբավորումներ ստեղծելու, այդ խմբավորումների մեջ մտնող երկրների տերիտորիայում ռազմական բազաներ կառուցելու ամերիկյան

քաղաքականությունը ուժեղացնում է լարվածությունը երկրագնդի այդ շրջանում և հակասում է ժողովուրդների արմատական շահերին ու խաղաղության ձգտմանը:

Եգիպտական «Ալ-Գյումհուրիա» թերթը այդ քաղաքականության մասին գրում է. «Անկարգությունները Սիրիայում, Իրանում, Սուդանում, հուզումները Իրաքում, Իսրայելում, լարված դրությունը Սուեզի ջրանցքի գոտում, իմպերիալիստական ճնշումը Լիվիայի վրա, դավադրությունները Հորդանանում և Լիբանանում— այս բոլորը Արևմուտքի՝ Միջին Արևելքում վարած քաղաքականության տրամաբանական հետևանքներ են: Դրանք արդյունք են այդ շրջանի երկրների քաղաքական և տնտեսական ճնշմանը, որի նպատակն է ստիպել նրանց դադարեցնել ամեն տեսակի դիմադրություն ընդդեմ Արևմուտքի տնտեսական նախագծերի և ռազմական բլոկներ ստեղծելու քաղաքականության»:

Սակայն որքան էլ ԱՄՆ-ի իմպերիալիստները փորձում են ընկճել իրենց քաղաքականության դեմ ուղղված ժողովուրդների դիմադրությունը, այդ բանը նրանց չի հաջողվում անել: Օրեցօր աճում է ժողովուրդների պայքարը ԱՄՆ-ի ոտնձգությունների դեմ: Նա



ընդգրկել է ոչ միայն այն երկրները, որոնց նպատում է ագրեսիվ բլոկի մեջ ներքաշվելու վտանգը, այլև Մերձավոր ու Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի այլ երկրները:

Լայն թափ է ստացել Պակիստանը ԱՄՆ-ի ագրեսիվ պլանների մեջ ներգրավելու դեմ ուղղված պայքարը հենց Պակիստանում: Պակիստանում ռազմական պակտերի քաղաքականության դեմ ուղղված հասարակական կարծիքի բողոքի արտահայտությունն է հանդիսանում Արևելյան Պակիստանում վերջերս տեղի ունեցած ընտրություններում իշխող պարտիայի՝ Մուսուլմանական լիգայի կրած պարտությունը և Միացյալ ճակատի հաղթանակը, որը հանդես է գալիս ամերիկյան «ռազմական օգնությունից» հրաժարվելու օգտին, Պակիստանի անկախության օգտին: Մարտի 25-ին Արևելյան Պակիստանի խաղաղության պաշտպանության կոմիտեն հրապարակեց մի դիմում, որի մեջ խիստ դատապարտում է ամերիկա-պակիստանյան ռազմական պակտը: Կոմիտեն հայտարարում է, որ Պակիստանի խաղաղասեր ժողովուրդը համակված է այդ պակտի դեմ պայքարի ելնելու և իր հայրենիքի ազատությունն ու ինքնուրույնությունը ամերիկյան

ագրեսորների ոտնձգություններից պաշտպանելու վճռականությամբ։

«Ամերիկյան կառավարողները,— ասվում է դիմումի մեջ,— ցանկանում են վերահսկողություն սահմանել ամբողջ մուսուլմանական աշխարհի վրա՝ Հարավ-Արևելյան Ասիայի մարտնչող ժողովուրդներին ստրկացնելու և Սովետական Միության ու Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի վրա հարձակվելու համար»։

Ամերիկյան «օգնությունը» Պակիստանին և վերջինիս կողմից ԱՄՆ-ին ռազմական բազաներ տրամադրելը հատկապես սուր բողոքներ է առաջացնում Հնդկաստանում, որը իրավամբ դրանում սպառնալիք է տեսնում իր սահմանների անվտանգության համար։ Հնդկաստանում տեղի են ունենում բազմաթիվ միտինգներ, ժողովներ, ցույցեր, որոնց մասնակիցները պահանջում են դադարեցնել ԱՄՆ-ի միջամտությունը Պակիստանի գործերին և թույլ չտալ ամերիկյան ռազմական բազաներ նրա տերիտորիայում։

Թյուրք-պակիստանյան դաշինքը և ԱՄՆ-ի փորձերը նրա մեջ ներգրավելու Իրաքին, առաջ են բերում Իրաքի և մյուս արաբական երկրների հասարակական կարծիքի եռանդուն բողոքները։ Լիբանանի «Աս-Սարխա»



թերթը խմբագրական հոդվածում վերջերս գրել է. «Միացյալ Նահանգների կողմից Թյուրքիայի և Պակիստանի վզին փաթաթված ագրեսիվ ռազմական դաշինքը արաբական և Մերձավոր ու Միջին Արևելքի մյուս երկրներում առաջ բերեց մեծ անհանգստություն և ատելության նոր ալիք Ամերիկայի նկատմամբ»։ Օրինակ, Իրաքի «Սաուտ ալ-Ախալի» թերթը հրապարակեց 3.500 մարդու կողմից ստորագրված մի դիմում, որում ասվում է. «Մենք նախազգուշացնում ենք պատասխանատու անձանց և հայտարարում. ժողովուրդները լի են վիժեցնելու ամեն մի պայմանագիր, կամ պատերազմի իմպերիալիստական նախագիծ, որը նպատակ ունի ստրկացնել, կամ իմպերիալիզմի մարտակառքին լծել մեզ»։

Այս է Մերձավոր ու Միջին Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի բոլոր ժողովուրդների կարծիքը, որոնք ցանկանում են ապրել ազատ և անկախ, ցանկանում են խաղաղություն և պայքարում են նրա համար։

---

# ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան կատարվեց այն ժամանակաշրջանում, երբ Եվրոպայի գլխավոր կապիտալիստական երկրները և Ամերիկայի Միացյալ Նահանգները ունեին զարգացած ինդուստրիա և գյուղատնտեսական մեքենաներ ու կցորդ գործիքներ արտադրող մեքենաշինական շատ գործարաններ։

1915 թվականին Ամերիկան ուներ 25 հազար տրակտոր, մինչդեռ ցարական Ռուսաստանն այդ ժամանակ ուներ զանազան մարկայի ընդամենը 165 տրակտոր, որոնք հիմնականում օտարերկրյա արտադրանք էին հանդիսանում։

Գյուղատնտեսական արտադրության մեքենայացումը 0,8 տոկոսից չէր անցնում։

Սոցիալիստական հնգամյակների կենսագործման և ինդուստրացման բարձր տեմպերի շնորհիվ մեր երկիրը կարճ ժամանակամիջոցում չտեսնված թռիչք կատարեց տրակ-



տորների և գյուղատնտեսական մեքենաների արտադրությունը կազմակերպելու գործում։

Տասը տարում (1930—1940) տրակտորների քանակի աճը ՍՍՌՄ-ում կազմեց 735 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ 168 տոկոս, այլ կերպ ասած՝ ՍՍՌՄ-ում տրակտորային պարկի աճը 4,4 անգամ բարձր էր, քան ԱՄՆ-ում։

Տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների քանակի աճի հետ մեկտեղ էական փոփոխություններ կատարվեցին տրակտորների նաև որակի ասպարեզում։ Գյուղատնտեսական արտադրությունից դուրս մղվեցին հին մեքենաները, դրանք փոխարինելով նոր, կատարյալ մեքենաներով։

Հայրենական մեքենաշինության հզորությունը պատկերացնելու համար, բավական է ասել, որ միայն Ռոստովի գյուղատնտեսական մեքենաների գործարանը տարեկան ավելի շատ մեքենաներ է արտադրում, քան արտադրում էին ցարական Ռուսաստանի գյուղատնտեսական մեքենաշինության բոլոր գործարանները՝ միասին վերցրած։

Կոլտնտեսային գյուղացիության աշխատանքը հեշտացնելու և նյութական բարիքների արտադրությունն ավելացնելու ասպարեզում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ցուցաբերած հսկայական հոգատարության շնորհիվ մեր

սոցիալիստական գյուղատնտեսությունը սիստեմատիկորեն ստանում է նորագույն տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական մի շարք այլ մեքենաներ։

Մեր երկրի գործարաններում այժմ արտադրվում են այնպիսի հզոր տրակտորներ և գյուղատնտեսական մեքենաներ, որոնք լիովին համապատասխանում են գյուղատնտեսական արտադրության պահանջներին՝ երկրի բոլոր գոտիներում։

ՍՍՌՄ արդյունաբերության կողմից թողարկվող տրակտորների հիմնական տեսակներն են՝

1. ԽՏԶ—7— թողարկում է Խարկովի տրակտորային գործարանը, կարողությունը՝ 12 ձիու ուժ, նախատեսված է բանջարաբուծության, պտղատու տունկերի և սակավ էներգիա պահանջող դաշտային այլ աշխատանքների մեքենայացման համար։

2. Ունիվերսալ 1 և 2— թողարկում է Վլադիմիրի տրակտորային գործարանը. կարողությունը՝ 22 ձիու ուժ։ Այս սիստեմի տրակտորը ընդհանուր նշանակություն ունեցող գյուղատնտեսական պրոցեսների մեջ օգտագործվելուց բացի, պիտանի է նաև շարահերկ կուլտուրաների խնամքի ու մշակման աշխատանքների համար։

3. ԿԴ—35 և ԿԴՊ—35— թրթուրավոր տրա-



կտոր, թողարկում են Վլադիմիրի և Լիպեցկի գործարանները։ Շարժիչի կարողությունը՝ 36 ձիու ուժ։ Նախատեսված են ընդհանուր նշանակման պրոցեսների համար, իսկ ԿԴՊ—35 տրակտորը նաև շարահերկ մշակության տրակտոր է։

4. ՄՏԶ— (Բելոռուս)— անիվավոր դիզելային տրակտոր։ Կարողությունը՝ 36 ձիու ուժ։ Նախատեսված է շարահերկ կուլտուրաների խնամքի և մշակման համար։ Դա մի նոր մեքենա է, որի վրա հարմարեցվում է սածիլ տնկող մեքենա և որոշ այլ մեքենաներ՝ շարահերկ կուլտուրաների մշակման համար։

5. ԴՏ—54— թողարկում են Ալթայի, Ստալինգրադի և Խարկովի գործարանները։ 54 ձիու ուժ ունեցող թրթուրավոր, հզոր դիզելային տրակտոր՝ ընդհանուր նշանակման համար։

6. Ս—80— արտադրում է Կիրովի տրակտորային գործարանը։ 80 ձիու ուժ ունեցող թրթուրավոր, դիզելային տրակտոր՝ ընդհանուր նշանակման համար։

Հիշյալ մարկաներից բացի, ներկայումս գյուղատնտեսական արտադրության մեջ օգտագործվում են նաև ՍԽՏԶ—ՆԱՏԻ (Ստալինգրադի, Խարկովի և Ալթայի գործարաններ) տրակտորները, որոնք ունեն 52 ձիու

ում, նախատեսված են վարի, ցանքի, համատարած կուլտիվացիայի, փոցխի, բերքահավաքի և այլ պրոցեսների համար:

Տրակտորներից բացի, արդյունաբերությունը թողարկում է մեծ քանակությամբ գյուղատնտեսական կատարելագործված մեքենաներ՝ հողի մշակման, ցանքի, բերքահավաքի և այլ աշխատանքների համար:

Ահա դրանցից մի քանիսը.

1. **Տրակտորային կուլտիվատորներ** — տարբեր մարկայի, նախատեսված են դաշտի համատարած ու միջշարային մշակման և խոր փխրեցման համար:

2. **Տրակտորային դիսկավոր փոցխեր և լուշչիլնիկներ**, որոնք նախատեսված են վարից հետո հողի մշակման, կերաբույսերի ճմաշերտի ցաքանման ու ցանքի, խաշողի և պտղատու այգիների մշակման, խոզանի երեսվարի և այլ աշխատանքների համար:

3. **Շարքացաններ** տարբեր մարկայի՝ հացահատիկի, խոտաբույսերի սերմերի, վուշի, բամբակի, ճակնդեղի, կոմբինացված և այլ շարքացաններ:

Ներկայումս լայնորեն կազմակերպված է ՍՇ—6 ա շարքացանների արտադրությունը՝ շարահերկ կուլտուրաների ցանքը քառակուսի-բնային եղանակով կատարելու համար:

4. **ՍՌՆ—4 սածիլ տնկող մեքենա.** սածիլ-



ները տնկում է քառակուսի-բնային եղանակով, արտադրողականությունն է օրական 1—1,5 հեկտար:

5. **Կարտոֆիլ տնկող ՍԿԳ—4** մեքենա, կարտոֆիլը տնկում է քառակուսի-բնային եղանակով:

Մեքենան կատարում է կարտոֆիլի տընկումը ոչ թե ըստ մեկ պալարի, այլ բների, յուրաքանչյուր բնում տնկելով 2—3 պալար, հավասար հեռավորություն պահպանելով, ինչպես բների, այնպես էլ շարքերի միջև: Մեքենան սերմերի հետ միաժամանակ յուրաքանչյուր բնի մեջ մտցնում է անհրաժեշտ քանակությամբ հանքային պարարտանյութեր: Այդ եղանակով տնկված կարտոֆիլը կարող է մշակվել տրակտորային կուլտիվատորներով՝ թե լայնությամբ և թե երկարությամբ: Մեքենայի արտադրողականությունն է մեկ հերթափոխում 6—8 հեկտար: Մեքենան սպասարկում են 5 մարդ: «ՍԿԳ—4» մեքենայի օգտագործումը հեշտացնում է կոլտնտեսականների աշխատանքը և բարձրացնում կարտոֆիլի բերքատվությունը:

Հայրենական արդյունաբերությունը վերոհիշյալ մեքենաներից բացի, լայնորեն թողարկում է նաև կերահայթայթման մեքենաներ:

Տրակտորային խոտհնձիչ մեքենաներ, որոնց արտադրողականությունը 10 ժամում կազմում է ավելի քան 30 հեկտար։ ԿՍ—10 ինքնագնաց խոտհնձիչ մեքենա, արտադրողականությունն է 10 ժամում ավելի, քան 50 հեկտար։

Բացի դրանից, արտադրվում և լայնորեն կիրառվում են կերերի նախապատրաստման ու մշակման զանազան մարկայի մեքենաներ՝ սիլոսահատներ, ծղոտահատներ, քուսպամանրիչներ, կեր փափկացնող-մշակող մեքենա և այլն։

Բերքահավաքի մեքենաներ։ Դրանց թվին են պատկանում Ս—4 ինքնագնաց կոմբայնը՝ 8—10 հեկտարի արտադրողականությամբ, Ստալինեց—6 կոմբայնը՝ 10—15 հեկտարի արտադրողականությամբ։

Հացահատիկային կոմբայններից բացի, նոր կոմբայններ են թողարկվում նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների համար, օրինակ, ճակնդեղ հանող կոմբայն, կարտոֆիլ հանող կոմբայն, սիլոս պատրաստող կոմբայն, բամբակ հավաքող մեքենա և այլն։

Բոլոր այս մեքենաները առավելագույն չափով հեշտացնում են մարդու աշխատանքը և բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը։

---



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԼԵԶՈՒՆ

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Ներկայումս, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում, է՛լ ավելի մեծ նշանակություն է ստանում քաղաքական ագիտացիան։

Ագիտացիան աշխատավորների դաստիարակման և կազմակերպման հզոր միջոց է։ Վ. Ի. Լենինն ասել է. «Պետք է վերադաստիարակել մասսաներին, իսկ նրանց վերադաստիարակել կարող է միայն ագիտացիան և պրոպագանդան»։

Մեծ ու բազմակողմանի, պատվավոր ու պատասխանատու է ագիտատորի դերը սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության գործում։ Ագիտատորը՝ պարտիական թե անպարտիական, մարքսիստական-լենինյան ուսմունքի պրոպագանդիստ է, այդ ուսմունքի ակտիվ ու հետևողական կիրառողը։ Ագիտատորները պարտկազմակերպությունների օգնականն են

այն պայքարում, որ նրանք մղում են մեր երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրները հաջողությամբ կատարելու համար:

Այստեղից էլ այն բարձր պահանջը, որ ներկայացվում է յուրաքանչյուր ագիտատորի: Ագիտատորը պետք է ունենա մարքսիստական-լենինյան լայն աշխարհայացք, ընդհանուր և քաղաքական բարձր պատրաստություն, ժամանակի, իրադրության մեջ կողմնորոշվելու հմտություն, կազմակերպական ընդունակություն: Այդ բոլոր հատկություններով հանդերձ ագիտատորը պետք է կատարելապես տիրապետի այն լեզվին, որով նա ագիտացիա է մղում մասսաների մեջ:

Իրոք, ագիտատորի զենքը լեզուն է: Լավ չէ այն ագիտատորը, որը չի տիրապետում այդ լեզվին, հնարավոր է համարում մասսաների առաջ հանդես գալ, զրույցներ անցկացնել առանց քերականորեն ճիշտ արտահայտվելու, պարզ ու հստակ խոսելու: Լեզուն մտածողության գործիք է, միտքն արտահայտելու գործիք: «Եթե մարդը չի կարող գրագետ կերպով ճիշտ շարադրել իր մտքերը, կնշանակի նա նույնպես անխնամ, քաոսային կերպով էլ մտածում է»,— ասել է ընկեր Ստալինը Սոցիալիստական Աշխա-



տանքի Հերոս Յակովլևի հետ ունեցած զրույցի ժամանակ:

Ագիտատորը պետք է կարողանա իր մտքերը պարզ ու ճշգրիտ ձևակերպել խոսքերով, այնպես, որ նրանք տպավորություն գործեն, հասկանալի ու հասանելի լինեն յուրաքանչյուրին՝ թե՛ բանվորին, թե՛ կոլտնտեսականին, թե՛ ծառայողին: Ագիտատորը պետք է կատարելապես տիրապետի գրական լեզվին, նրա բառարանին, նրա դարձվածքներին, որովհետև, ինչպես Մաքսիմ Գորկին է ասում, լեզվի իսկական գեղեցկությունը ստեղծվում է բառերի ճշտությամբ, պարզությամբ, հնչեղությամբ:

⁂

Ագիտատորի լեզուն պետք է համապատասխանի քաղաքական ագիտացիայի հիմնական սկզբունքներին: Խոր պարտիականություն, բարձր իդեականություն, քաղաքական նպատակասլացություն, պարզություն, հստակություն,— սրանք են, ահա, քաղաքական ագիտացիայի սկզբունքները, սրանցով էլ հենց պայմանավորվում է ագիտատորի լեզուն, ոճը: Այդ չի նշանակում, սակայն, թե ագիտատորը զրույցի ընթացքում պետք է անընդհատ կրկնի «պարտիականություն», «կոմունիզմ», «հայրենասիրու-

թյուն» բառերը։ Փաստերի, գործողության պարզ և հստակ նկարագրությունը պետք է ունկնդրին հանգեցնի պարտականության, նրա մեջ դաստիարակի բոցավառ սեր դեպի Հայրենիքը, անհողդողդ կամք և պատրաստակամություն՝ ոչինչ չխնայել կոմունիզմի կառուցման համար։ Ագիտատորի խոսքը պետք է հագեցված լինի ճշմարտության ամենահաղթ ուժով, այն պետք է լինի հակիրճ, կրքոտ, ոգեշունչ։

Մարտ ամսի սկզբներին Ս. Մ. Կիրովի անվան գործարանի 2—1 ցեխի ագիտատոր ընկ. Հովհաննիսյանը զրույց կազմակերպեց՝ նվիրված «Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվար-մարտյան պլենումի որոշմանը։ Զրույցի վերջում ագիտատորն իրենց գործարանից Ղազախստան գնացող երիտասարդներին դիմեց ահա այսպիսի ոգեշունչ խոսքերով.

— Դուք գնում եք մեծ և փառապանծ գործի. գնում եք արշավի ընդդեմ դարավոր խոպանի։ Գնացեք սիրելի ընկերներ, մենք ձեզ չենք մոռանա, սերունդները ձեզ չեն մոռանա։

Դժբախտաբար մեր ոչ բոլոր ագիտատորներն են պատշաճ ուշադրություն դարձնում



լեզվի հնչեղության և գեղեցկության վրա։ Մ՞րոնք են մեր ագիտատորների լեզվի համար բնորոշ թերությունները։

Ամենից առաջ աչքի է ընկնում լեզվի աղքատությունն ու ոչ ճկունությունը։ Դա շատ հաճախ հանգեցնում է տավտոլոգիայի, բառերի չափից ավելի կրկնության։ Ինչի՞ են նման, օրինակ, Շամշադինի շրջանի Բերդ գյուղի ագիտատորներից մեկի հետևյալ մտքերը. «Ամեն տարի մեր ծխախոտագործ կոլխոզը ծխախոտից ստանում է մեծ եկամուտ. կոլխոզնիկները ծխախոտագործության մեջ իրենց հանդես են բերում որպես լավագույն ծխախոտագործներ»։

Շատ ագիտատորներ լեզուն խճողում են տեղական բառերով և դարձվածքներով, ինչպես և շտամպած, տաղտուկ, գրասենյակային, մակաբույծ բառերով և ֆրազներով՝ «այսպես ասած», «հասկանում ենք», «ինչանակի», «այս հարցի տեսակետից», «առ այսօր մենք տեսնենք», «ներքոհիշյալ», «վերոհիշյալ» և այլն։ Օտար բառերը գործ են ածվում առանց անհրաժեշտության։ Ինչո՞ւ ասել «դեֆեկտներ», երբ կարելի է ասել թերություններ։

Այնուհետև, նկատելի է բառերի սխալ ընտրություն նախադասություն կազմելիս,

ինչպես նաև բառերի սխալ դասավորություն նախադասության մեջ։ «Դաշտավարական բրիգադաների անպատասխանատվության շնորհիվ ցրտահերկի պլանը թերակատարվեց», ինչպես կարելի է. չէ՞ որ «շնորհիվ»-ը դրական իմաստ ունի։ Կամ թե չէ. «Մոսկվա ուղարկվեց կոմբայնավար Պողոսյանը, որտեղ նա մնաց մեկ ամիս», պետք է լինի՝ «կոմբայնավար Պողոսյանը ուղարկվեց Մոսկվա, որտեղ նա մնաց մեկ ամիս»։ Ագիտատորները երբեմն արտահայտում են հակասական մտքեր. մի՞թե կարելի է ասել՝ «Շուտով կսկսվի գարնանացանը. արդեն ցանվել են առաջին հեկտարները», եթե գարնանացանը դեռ չի սկսվել, ապա ինչպես են ցանվել առաջին հեկտարները։ Մի շարք բառեր սխալ են գործածվում և արտասանվում։ «Իրավմամբ», փոխանակ ասելու «իրավամբ», «պրոպագանդիա», փոխանակ ասելու «պրոպագանդա»։ Թույլ են տրվում ավելորդ հապավումներ. փոխանակ ասելու կոլտնտեսության վարչություն, ասում են կոլվարչություն։

Ագիտատորը պարտավոր է հոգալ իր լեզուն կատարելագործելու և հարստացնելու մասին։ Նա պետք է լավատեղյակ լինի լեզվաշինարարության հարցերին, տիրապե-



տի լեզվաբանության վերաբերյալ մարքսիստական ուսմունքին։ Մեծ նշանակություն ունի մարքսիզմի կլասիկների աշխատությունների և ճառերի լուրջ ուսումնասիրությունը։ Լենինի և Ստալինի ելույթները, նրանց բարձր ճաշակը դեպի լեզուն և ոճը լավ օրինակ են մեր ագիտատորների համար։

Լեզուն հարստացնելու շատ միջոցներ ու եղանակներ կան։ Ամենից առաջ անհրաժեշտ է, որ ագիտատորը աշխատի իր վրա, իր կրթական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու վրա։ Սիստեմատիկ ընթերցանությունը ագիտատորի, և ոչ միայն նրա, գիտելիքների և կուլտուրայի աղբյուրն է։

Ագիտատորը պետք է լայնորեն օգտվի գեղարվեստական գրականությունից և օգտագործի գրողների պատկերավոր, արտահայտչական մտքերն ու ասույթները։

Արթիկի շրջանի Նոր Կյանք գյուղի ագիտատոր Մերուժան Մինասյանը՝ «Հացահատիկային տնտեսությունը գյուղատնտեսության արտադրության հիմքն է» թեմայով զրույցի մեջ, խոսելով հացահատիկի նշանակության մասին, հիշեցրեց Մայակովսկու հետևյալ խոսքերը.

Շատերի աչքի փուշն է
Ռեսպուբլիկան,
Շատերը կուզեին
ջախջախել, փշրել,—
Բայց մրրիկներից
Նրան պաշտպանող
Մեր ավինը կա...
Իսկ խաղաղ ժամին՝
մեզ պահապան է
Դիպլոմատիան մեր։
Սակայն մենք չունենք
առավել զորեղ,
համոզիչ փաստարկ՝
Ցորենով լցված
ամբարից բացի,
Որը ճաքում է
ճնշումից հացի։

Կոլտնտեսականների հետ զրուցելով իրենց գյուղի կուլտուրական վերելքի մասին, Սևանի շրջանի Ծովագյուղի ուսուցիչ-ագիտատոր Խ. Գուլանյանը հմտորեն մեջբերումներ կատարեց Մուրացանի «Առաքյալ»-ից։ Ահա թե ինչպես նա սկսեց իր զրույցը. «Երեք գրադարան ունի մեր գյուղը և ոչ միայն գրադարաններ. միջնակարգ դպրոց, ակումբ, ռա-



դիո, հեռախոս,... Դա, ինչպես գիտեք, նախկին Ջիբուխլուն է, Մուրացանի նկարագրած Ջիբուխլուն, երբեմնի «գյուղ» կոչված «ավերանոցը»՝ «չոր ու ցամաք, ծուռ ու մուռ փողոցներով, հողե տնակներով, կեղտոտ բակերով». կամսարյանները գալիս ու գնում էին, իսկ, Մուրացանի խոսքերով ասած,— Ջիբուխլո՞ւն... Սևանը՞,— նրանք դարձյալ մնում էին իրենց տեղն անշարժ, անփոփոխ, ինչպես հարազատ մասունք անփոփոխ հավիտենականության»։

Անհրաժեշտ է, որ ագիտատորը զրույցի ընթացքում դիմի պատկերավոր համեմատությունների, աֆորիզմների, օգտագործի ժողովրդական ասացվածքներ։ Սպիտակի շրջանի Գեղարոտ գյուղի ագիտատորներից մեկը, կոլտնտեսային դաշտերից ստացված ցորենի մասին արտահայտվեց, ահա, այսպես՝ «Ցորեն եմ ասում, ինչ ցորեն, որ ջուրը լցնես, չի պղտորվի»։ Կամ՝ «Ցորենը քոնն է, երբ ամբարումն է», «Ինչ ցանես, էն կհնձես», այս և նման պատկերավոր ֆրազներն ու արտահայտություններն, անշուշտ, համ ու հոտ են տալիս զրույցին, նպաստում են լեզվի ժողովրդայնությանը, պարզությանն ու հստակությանը։

Վերջապես հարկավոր է, որ ագիտատորը

լավ իմանա այն նյութը, որի մասին նա խոսում է։ Չի կարելի լավ և հստակ խոսել առանց զրույցի թեման նախապես լավ մարսելու, պարզ պատկերացնելու։

Ամփոփենք. ագիտացիոն աշխատանքն արվեստ է. այդ արվեստին տիրապետում է նա, ով ընդհանուր և քաղաքական անհրաժեշտ պատրաստության հետ միասին լավ է իմանում իր մայրենի լեզուն, գործնականորեն կիրառում նրա արտահայտչական ձևերն ու միջոցները։

Լեզուն իմանալը մեծ գործ է. ագիտատորը պետք է պատկառանքով վերաբերվի այդ հզորագույն գործիքի հետ, մշտապես հարստացնի և կատարելագործի իր լեզուն, իր զենքը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԳԱՐՆԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ

1. Գարնանացանը սեղմ ժամկետում և ագրոտեխնիկական բարձր մակարդակով անցկացնելը առատ բերք ստանալու լավագույն նախապայմանն է։

2. Գարնան գյուղատնտեսական աշխատանքները կատարենք խմբով և ագրոտեխնիկական կանոններին լրիվ համապատասխան։

3. Ցանքերը ժամանակին և արդյունավետ կերպով պարարտացնելը, սնուցելը՝ կարևորագույն միջոցառումներ են բերքատվության բարձրացման գործում։

4. Գարնան գյուղատնտեսական աշխատանքների մեջ լայնորեն արմատավորենք գիտության նվաճումները և առաջավոր փորձը։

5. Գյուղատնտեսական մեքենաները բարձր արտադրողականությամբ օգտագործելը կարևորագույն պայման է գարնանացանը հաջող անցկացնելու գործում։

6. Ապահովենք տրակտորների անխափան աշխատանքը։

7. Բարելավենք տրակտորների և գյուղատնտեսական

*մյուս մեքենաների ու գործիքների տեխնիկական խնամքը։*

*8. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցություն գարնանացանը բարձր ցուցանիշներով կատարելու համար*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում Պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 56—72. Հայպետհրատ, 1952 թ.։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *էջ 5—28, Հայպետհրատ, 1953։*

ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1953 թվականի սեպտեմբերի 7-ին։ Ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953 թ.։*

Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1954 թ. մարտի 2-ին ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի 6-ի համարում։*

Կազմակերպված անցկացնել գարնանացանը, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը 1954 թ. № 79։*

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի գլխավոր կոմիտեի որոշումից *(ցուցահանդեսի մասնակիցներ ընտրելու ցուցանիշների և պայմանների մասին), տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. № 88-ում։*

Ագիտատորների խնդիրները գարնանացանի օրերին, *«Ագիտատորի բլոկնոտ» № 8։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը 1954 թվականի մայիսի 1-ի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի № 94-ում։*

Ինֆորմացիոն հաղորդագրություններ ՍՍՌՄ Գերագույն Սովետի նիստերի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի ապրիլի վերջին տասնօրյակի համարներում։*

ՍՍՌՄ 1954 թվականի Պետական բյուջեի մասին ՍՍՌՄ Ֆինանսների մինիստր դեպուտատ Ա. Գ. ԶՎԵՐԵՎԻ զեկուցումը, *տպագրված «Ս. Հ.»-ի № 95-ում։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆԻ ճառը Ազգությունների Սովետում, *տպագրված «Ս. Հ.»-ի № 99-ում։*

## 1954 ԹՎԱԿԱՆԻ ԵՐԿՐՈՐԴ ԵՌԱՄՍՅԱԿԻ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԵՎ ՈՐԱԿԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ

*1. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցություն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։*

*2. Պատվով կատարենք սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։*

*3. Ամեն կերպ բարելավենք արտադրանքի որակը, երկրին տանք ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք։*

4. *Սոցմրցության ընթացքում օգնենք ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար։*

5. *Պայքարենք անտնտեսվարության և շռայլումների դեմ, արտադրության մեջ կիրառենք խնայողության ամենախիստ ռեժիմ։*

6. *Լրիվ և արդյունավետ օգտագործենք արտադրական կարողությունները, հոգատարությամբ խնամենք մեքենաներն ու մեխանիզմները։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1952, էջ 43—56, 75—83։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *էջ 5—28, Հայպետհրատ, 1953։*

Հանուն աշխատանքի բարձր արտադրողականության, *ինֆորմացիոն նյութեր՝ տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. № 85-ում։*

Լենինի քաղաքի ձեռնարկությունների սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի № 89-ում։*

Սոցիալիստական լայն մրցություն ծավալել աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. № 84-ում։*

Մոսկվացիների օրինակով, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. № 86-ում։*



Կիրովցիները արձագանքում են, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. № 86-ում։*

Բարձրացնել ձեռնարկությունների ղեկավարման մակարդակը. *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. № 90-ում։*

ՍՍՌՄ արդյունաբերության վերելքը *(թվեր և փաստեր), «Ագիտատորի բլոկնոտ» № 7։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը 1954 թվականի մայիսի 1-ի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի № 94-ում։*

Ինֆորմացիոն հաղորդագրություններ ՍՍՌՄ Գերագույն Սովետի նիստերի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի ապրիլի վերջին տասնօրյակի համարներում։*

ՍՍՌՄ 1954 թվականի Պետական բյուջեի մասին ՍՍՌՄ Ֆինանսների մինիստր դեպուտատ Ա. Գ. ԶՎԵՐԵՎԻ զեկուցումը, *տպագրված «Ս. Հ.»-ի № 95-ում։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆԻ ճառը Ազգությունների Սովետում, *տպագրված «Ս. Հ.»-ի № 99-ում։*

## ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆԸ
(Մայիսի 9-ը)

1. *Սովետական ժողովրդի համաշխարհային պատմական հաղթանակը Հայրենական Մեծ պատերազմում։*

2. *Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի հաղթանակների կազմակերպիչն է և ոգեշնչողը Հայրենական մեծ պատերազմում։*

3. *Սովետական Միության պայքարը խաղաղության համար՝ ամբողջ աշխարհում։*

4. *Սովետական յուրաքանչյուր քաղաքացու հայրե-*

նախիրական պարտքն է անդադրում կերպով ամրապնդել իր Հայրենիքի ռազմական ու տնտեսական հզորությունը և թշնամիների նկատմամբ լինել զգոն։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին, *Հայպետհրատ. 1950 թ.։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 3—5, 31—40, 91—97, Հայպետհրատ, 1952։*

ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը 1954 թվականի մայիսի 1-ի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի № 94-ում։*

Ինֆորմացիոն հաղորդագրություններ ՍՍՌՄ Գերագույն Սովետի նիստերի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի ապրիլի վերջին տասնօրյակի համարներում։*

ՍՍՌՄ 1954 թվականի Պետական բյուջեի մասին ՍՍՌՄ Ֆինանսների մինիստր դեպուտատ Ա. Գ. ԶՎԵՐԵՎԻ զեկուցումը, *տպագրված «Ս. Հ.»-ի № 95-ում։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆԻ ճառը Ազգությունների Սովետում, *տպագրված «Ս. Հ.»-ի № 99-ում։*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ

*1. Մայիսի 5-ը Սովետական մամուլի օրն է. 1912 թվականին այդ օրը լույս տեսավ «Պրավդա»-ի առաջին համարը։*

*2. Սովետական մամուլը ամենաճշմարտացի և աժենաազատ մամուլն է աշխարհում։*



*3. Մամուլի աճը ՍՍՌՄ-ում։*

*4. Կոմունիստական պարտիան սովետական մամուլի ստեղծողն է և ղեկավարը։*

*5. Սովետական մամուլի պայքարը խաղաղության համար ամբողջ աշխարհում։*

*6. Սովետական մամուլը պրոպագանդում և մասսայականացնում է գիտության նվաճումները, առաջավոր փորձը, օգնում է աշխատավորներին կենսագործելու պարտիայի և կառավարության որոշումները։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր բերբերի բնույթի մասին. *Երկեր, հատ. 28, 4-րդ հրատարակություն, էջ 108—109։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— «Պրավդա»-ի տասնամյակի առթիվ և «Մամուլը որպես կոլեկտիվ կազմակերպիչ», *Երկեր, հատ. 5, էջ 144—149, 311—315։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ—Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 91—97, Հայպետհրատ 1952։*

---



## ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՄՈՍԿՎԱՅԻ ԹԱՆԳԱՐԱՆՆԵՐԸ

### Վ. Ի. Լենինի կենտրոնական թանգարան

*Թանգարանի 22 ընդարձակ ու լուսավոր դահլիճներում տեղավորված են ավելի քան 7 հազար էքսպոնատ, որոնք պատմում են Կոմունիստական պարտիայի և Սովետական սոցիալիստական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի կյանքի ու գործունեության մասին։*

### Մ. Ի. Կալինինի թանգարան

*Թանգարանի բազմաթիվ փաստաթղթեր և նյութեր նվիրված են Միխայիլ Իվանովիչ Կալինինի կյանքին և գործունեությանը։*

### ՍՍՌՄ ռևոլյուցիայի թանգարան

*Թանգարանում հավաքված են Կոմունիստական պարտիայի պատմության, Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժման և դասակարգային պայքարի պատմության վերաբերյալ փաստաթղթեր։*



### Սովետական Բանակի Կենտրոնական թանգարան

*Թանգարանի էքսպոնատները պատմում են ՍՍՌՄ Զինված Ուժերի փառապանծ ուղու մասին։*

### Պետական պատմական թանգարան

*Թանգարանը ցուցադրում է մեր երկրի ժողովուրդների պատմությունը՝ սկսած հնագույն ժամանակներից, իսկական իրեղեն իլյուստրատիվ և արխիվային նյութերով։*

### Ա. Ս. Պուշկինի անվան կերպարվեստի թանգարան

*Թանգարանում ներկայացված են Հին Արևելքի, Հին Հունաստանի և Հռոմի, ինչպես նաև Արևմտյան Եվրոպայի երկրների 15-ից 20-րդ դարի արվեստը։*

### Մոսկվա քաղաքի պատմության և վերակառուցման թանգարան.

*Թանգարանի էքսպոնատներում արտացոլվում է Մոսկվայի պատմությունը, մայրաքաղաքի սոցիալիստական վերափոխումը՝ կապված վերակառուցման գլխավոր պլանի հետ։*

### Պոլիտեխնիկական թանգարան

*Թանգարանում ներկայացված են սոցիալիստական գիտության և տեխնիկայի, սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության նվաճումները, ինչպես նաև արտացոլված են տեխնիկայի պատմության հիմնական էտապները:*

### Պետական Տրետյակովյան գալերեյա

*Տրետյակովյան գալերեյան ռուսական և սովետական կերպարվեստի հարստագույն գանձարանն է:*

---


Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении**

№ 9 1954 г.

**БЛОКНОТ АГИТАТОРА**

ՎՖ 09925 Պատվեր 393 Տիրաժ 8500

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան*
*Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.:*